Պրոլետարներ բոլոր յերկրների,
միացե՛ք՝

I օր.

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յով ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 19 (26)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1937

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 19 (26)

ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ — 1937

## ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՈՐՎԱ ՄԱՍԻՆ

## ԽՍՀՄ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԳՈՐԾԱԴԻՐ ԿՈՄԻՏԵՅԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ

*Խորհուրդների 8-րդ Արտակարգ Համագումարի վորոշման և «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» 72-րդ հոդվածի հիման վրա, վորի համաձայն ԽՍՀՄ Կենտրոնական Գործադիր Կոմիտեն վորոշում է՝*

1. *ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունները նշանակել* 1937 *թվականի դեկտեմբերի* 12-*ին*:

2. *ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների ընտրական կամպանիայի սկիզբը հայտարարել* 1937 *թվականի հոկտեմբերի* 12-*ից*:

*ԽՍՀՄ Կենտրոնական Գործադիր Կոմիտեյի նախագահ՝ Մ. ԿԱԼԻՆԻՆ*

*Ի. ա. ԽՍՀՄ Կենտրոնական Գործադիր Կոմիտեյի քարտուղար՝ ԽՍՀՄ Կենտգործկոմի Նախագահության անդամ՝*
*Ա. ԱՆԴՐԵԵՎ*

*Մոսկվա, Կրեմլ*
1937 *թ. հոկտեմբերի* 11

# ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ԿԱԶՄԸ ՀԱՍՏԱՏԵԼՈՒ ՄԱՍԻՆ

## ԽՍՀՄ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԳՈՐԾԱԴԻՐ ԿՈՄԻՏԵՅԻ ՎՈՐՈՇՈՒՄԸ

*«ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» 34-րդ և 35-րդ հոդվածների հիման վրա ԽՍՀՄ Կենտրոնական Գործադիր Կոմիտեն վորոշում ե հաստատել ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների Կենտրոնական Ընտրական Հանձնաժողովը՝ կազմված աշխատավորության հասարակական կազմակերպությունների և ընկերությունների հետևյալ ներկայացուցիչներից՝*

*Կենտրոնական Ընտրական Հանձնաժողովի նախագահ՝* Մոսկատով *Պյոտր Գեորգիյեվիչ — Պրոֆեսիոնալ Միությունների Համամիութենական Կենտրոնական Խորհրդից:*

*Կենտրոնական Ընտրական Հանձնաժողովի նախագահի տեղակալ՝* Շմիդտ *Ոտտո Յուլյեվիչ — Բարձրագույն դպրոցի և գի-*



*տական հիմնարկների աշխատողների պրոֆեսիոնալ միությունից:*

*Կենտրոնական Ընտրական Հանձնաժողովի քարտուղար՝* Մալենկով *Գեորգիյ Մաքսիմիլիանովիչ — Քաղլուսավարական հիմնարկների աշխատողների պրոֆեսիոնալ միությունից:*

*Կենտրոնական Ընտրական Հանձնաժողովի անդամներ՝*

Խրուշչև *Նիկիտա Սերգեյեվիչ — Մոսկվայի կոմունիստական կազմակերպությունից,*

Ուգարով *Ալեքսանդր Իվանովիչ — Լենինգրադի կոմունիստական կազմակերպությունից,*

Մեխլիս *Լև Զախարովիչ — «Պրավդա» թերթի աշխատակիցների կոլեկտիվից,*

Շոլոխով *Միխայիլ Ալեքսանդրովիչ — Խորհրդային Գրողների Միությունից,*

Կոսարև *Ալեքսանդր Վասիլյեվիչ — Յերիտասարդության Համամիութենական Լենինյան Կոմունիստական Միությունից,*

Գորշենին *Պավել Սիդորովիչ — ԽՍՀՄ պաշտպանության ու ավիացիոն - քիմիական շինարարության աջակցող ընկերության Կենտրոնական Խորհրդից (ՊԱՋԸ-Ավիաքիմ):*

Շապովալովա Տատյանա Պետրովնա — Վորոնեժի մարզի «Բոլշևիկ» կոլտնտեսության կոլտնտեսականներից,

Կոլեսնիկ Նիկոլայ Ֆիլիպպովիչ — Խարկովի տրակտորային գործարանի բանվորներից, ծառայողներից և ինժեներներից,

Սևոստյանովա Մատրյոնա Կուզմինիչնա — «Օկտյաբրսկայա Ռևոլյուցիա» գործարանի բանվորներից, ծառայողներից և ինժեներներից:

Շապովալով Ցևգենիյ Իլարիոնովիչ — Կրասնոդարի երկրի «Նովիյ Միր» կոլտնտեսության կոլտնտեսականներից,

Ցևտուշենկո Դմիտրիյ Մատվեևիչ — Կիևի կոմունիստական կազմակերպությունից,

Յուսուպով Ուսման — Ուզբեկական կոմունիստական կազմակերպությունից:

ԽՍՀՄ Կենտրոնական Գործադիր Կոմիտեյի նախագահ՝ Մ. ԿԱԼԻՆԻՆ

Ի ա. ԽՍՀՄ Կենտրոնական Գործադիր Կոմիտեյի քարտուղարի՝ ԽՍՀՄ Կենտգործկոմի Նախագահության անդամ՝

Ա. ԱՆԴՐԵՅԵՎ.



## ՄԻՈՒԹՅԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՅԵՎ ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՈԿՐՈՒԳՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### ԽՍՀՄ ԿԵՆՏԳՈՐԾԿՈՄԻ ՎՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

«ԽՍՀՄ Սահմանադրության 34-րդ ու 35-րդ հոդվածների և «ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի ընտրությունների կանոնադրության» 21-րդ, 22-րդ, 23-րդ և 24-րդ հոդվածների հիման վրա, ԽՍՀՄ Կենտգործկոմը սույն թվի հոկտեմբերի 11-ին վորոշեց կազմել Միության Խորհրդի ընտրությունների 569 ընտրական ոկրուգ և Ազգությունների Խորհրդի ընտրությունների 574 ընտրական ոկրուգ:

Հայկական ԽՍՀ-ում կազմված են հետևյալ ընտրական ոկրուգները՝

### Ա) ՄԻՈՒԹՅԱՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Ցերևանի ընտրական ոկրուգ՝ № 513 (կենտրոնը՝ Ցերևան քաղաքը):

Ցերևան քաղաքն իր արվարձաններով և

*Ղամարլվի, Կոտայքի, Աշտարակի ու Մեղրու շրջանները:*

Լենինականի ընտրական օկրուգ՝ № 514՝ (*կենտրոնը՝ Լենինական քաղաքը*):

*Լենինականի, Արթիկի, Ամասիայի, Հոկտեմբերյանի, Վաղարշապատի և Թալինի շրջանները:*

Կիրովականի ընտրական օկրուգ՝ № 515՝ (*կենտրոնը՝ Կիրովական քաղաքը*):

*Կիրովականի, Ալավերդու, Ստեփանավանի, Ապարանի, Դիլիջանի, Իջևանի և Շամշադինի շրջանները:*

Նոր-Բայազետի ընտրական օկրուգ՝ № 516 (*կենտրոնը՝ Նոր-Բայազետ քաղաքային տիպի ավանը*):

*Նոր-Բայազետի, Ախտայի, Մարտունու, Բասարգեչարի, Միկոյանի, Ազիզբեկովի, Վեդու, Ղափանի, Գորիսի և Սիսիանի շրջանները,*

## Բ) ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ-ԻՑ ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Երևանի Ստալինյան ընտրական օկրուգ՝ № 126: (*Կենտրոնը՝ Երևան քաղաք, Ստալինյան ռայխորհուրդ*):



*Երևան քաղաքի Ստալինյան ռայոնը հետևյալ սահմաններում՝ Չելյուսկինյանների փողոց, Հարավային պողոտա, 26 կոմիսարների անվան փողոց՝ մինչև Զանգու գետը և Ստալինյան ռայոնի քաղաքամերձ ավանները:*

Երևանի Քաղաքային կենտրոնական ընտրական օկրուգ՝ № 127: (*Կենտրոնը՝ Երևան քաղաք, Քաղաքային ռայխորհուրդ*):

*Երևան քաղաքի Քաղաքային կենտրոնական ռայոնը հետևյալ սահմաններում՝ Զանգու գետից, Մարքսի փողոցից, Հարավային պողոտայից, Նոր-Դոսի, Գնունու, Սունդուկյան, Կարմիր բանակային փողոցներից մինչև խճուղին:*

Երևանի Կիրովյան ընտրական օկրու՝ № 128: (*Կենտրոնը Երևան քաղաք, Կիրովյան ռայխորհուրդ*):

*Երևան քաղաքի Կիրովյան ռայոնը, հետևյալ սահմաններում— Հիվանդանոցից՝ Նոր-Դոսի, Գնունի, Տերյան, Երրորդ շրջանային, Սունդուկյան փողոցներով, մինչև Քանաքեռի խճուղին:*

Երևանի գյուղական ընտրական օկ-

րուգ՝ № 128: (կենտրոնը Երևան քաղաք, ղաք):

Աշտարակի, Մեղրու շրջանները և Երևան քաղաքի մի մասը՝ Զանգու գետի աջ ափով՝ քաղաքամերձ ավանների հետ միասին:

Երևանի քաղաքամերձ ընտրական օկրուգ՝ № 130: (կենտրոնը՝ Երևան քաղաքը):

Երևան քաղաքի Կիրովյան ռայոնը հետևյալ սահմաններում՝ Քանաքեռի խճուղու և Նոր յերկաթուղու համաման կետից Սունդուկյան, Տերյան, Գնունի, Կարմիր բանակային փողոցներով, խճուղին (մինչև Զանգու գետը) քաղաքամերձ ավաններով, և Կոտայքի գյուղական շրջանը (Արամուսի, Արզնու, Առինջի, Ջրվեժի, Նոռնուսի, Պտղնու, Թալալքյուղի, Թեջրաբակի, Շահարի և Քանաքեռի գյուղխորհուրդները):

Ալավերդու ընտրական օկրուգ՝ № 131: (կենտրոնը՝ Մանես բանվորական ավանը):

Ալավերդու շրջանը:

Ամասիայի ընտրական օկրուգ՝ № 132 (կենտրոնը՝ Ամասիա գյուղը):

Ամասիայի և Լենինականի շրջանները



(Ղանլիջայի, Ներքին Քեթիի, Որթաքիլիսայի, Թոփարլիի, Սարիարի, Ջաջուռի, Ղոնաղրանի, Կամոյի անվան, Աղբուլաղի, Գոյլախուշի և Պարնու գյուղխորհուրդները):

Լենինականի քաղաքային ընտրական օկրուգ՝ № 133: (կենտրոնը՝ Լենինական քաղաք, Տեքստիլի ռայխորհուրդ):

Քաղաքի Տեքստիլի, կայարանի, կենտրոնական ռայոնները, հետևյալ սահմաններում՝ Արթիկի յերկաթուղին և №№ 29, 28, 27 փողոցները, Կիրովի, գործարանային, № 14 փողոցները և Ղալթախչի, Նալբանդ, Ղարալ ու Ախգիբեկ գյուղխորհուրդները:

Լենինականի գյուղական ընտրական օկրուգ՝ № 134: (կենտրոնը՝ Լենինական քաղաքը):

Լենինական քաղաքը հետևյալ փողոցների սահմաններում՝ №№ 29, 28, 27, Կիրովի, Գործարանային, № 14 և Արալըխի, Ախուրիկի, Բաջողլու, Բայանդուրի, Դահարլիի, Դյուզքենդի, Իլխիաբիի, Կապսի, Ղարաքիլիսայի, Ղարիբջանյանի, Մուսայելյանի, Մուսականի, Օջախկուլիի, Թա-

*փաղուլակի ու Չրախլույի գյուղխորհուրդները:*

Կիրովականի ընտրական օկրուգ՝ № 135: (*կենտրոնը՝ Կիրովական քաղաքը*):

*Կիրովական քաղաքը՝ Քիմիական գործարանի ավաններով, Ձորագէսն ու Կիրովականի յերկաթուղային կայարանը և Կիրովականի շրջանը (Համամլույի, Արջուտի, Վարդանլույի, Վորթնավի, Հաջիղարայի, Հալավարի, Գյորանի, Ձորագյուղի, Ցեղնուտի, Դչլաղի, Ղաչաղանի, Սարալի, Խանջուղալի, Չիգդամլվի, Շահալիի և Ցողարլվի գյուղխորհուրդները:)*

Դիլիջանի ընտրական օկրուգ՝ № 13 (*կենտրոնը՝ Դիլիջան քաղաքատիպ ավանը*):

*Դիլիջանի և Կիրովականի շրջանները (Վոսկրեսենսկիյ, Համզաչիմանի և Ֆիոլետովյան գյուղխորհուրդները):*

Ախտայի ընտրական օկրուգ՝ **№ 137:** (*կենտրոնը՝ Ներքին-Ախտա գյուղը*):

*Ախտայի շրջան:*

Բասարգեչարի ընտրական օկրուգ՝ № 138. (*կենտրոնը՝ Բասարգեչար գյուղը*):

*Բասարգեչարի և Մարտունու շրջանները (Ծովինարի, Ներքին Ալիչալույի, Վերին*



*Ալիչալույի, Ներքին - Գյոզալդարայի, Զոլաքարի, Ասաղաձորի և Մարտունու գյուղխորհուրդները):*

Նոր-Բայազետի ընտրական օկրուգ՝ № 139: (*կենտրոնը՝ Նոր-Բայազետ քաղաքատիպ ավանը*):

*Նոր-Բայազետի և Մարտունու շրջանները (Վերին Աղյամանի, Ներքին Աղյամանի, Աթամխանի, Ցերանոսի, Լիճքի, Թաղագյուղի, Զորագյուղի, Աթղաշի, Մադինայի և Վերին Ղարանլուղի գյուղխորհուրդները):*

Միկոյանի ընտրական օկրուգ՝ № 140: (*կենտրոնը՝ Միկոյան գյուղը*):

*Միկոյանի և Ազիզբեկովի շրջանները:*

Ղամարլուի ընտրական օկրուգ՝ № 141: (*կենտրոնը՝ Ղամարլու քաղաքատիպ ավանը*):

*Ղամարլույի շրջանը:*

Վեդու ընտրական օկրուգ՝ № 142: (*կենտրոնը՝ Վեդի գյուղը*):

*Վեդու և Կոտայքի շրջանները (Գյառնի, Բաշգյուղի, Գեղադիրի, Վերին Գողթի, Գյամրեզի, Ջառի, Կապուտանի, Քյանքյանի և Հրազդանի գյուղխորհուրդները):*

Ստեփանավանի ընտրական օկրուգ՝ № 143: (կենտրոնը՝ Ստեփանավան քաղաքատիպ ավանը):

Ստեփանավանի շրջանը:

Արթիկի ընտրական օկրուգ՝ № 144: (կենտրոնը՝ Արթիկ բանվորական ավանը):

Արթիկի շրջանը:

Ապարանի ընտրական օկրուգ՝ № 45: (կենտրոնը՝ Ապարան գյուղը):

Ապարանի շրջանը:

Իջևանի ընտրական օկրուգ՝ № 146: (կենտրոնը՝ Իջևան քաղաքատիպ ավանը):

Իջևանի և Շամշադինի շրջանները:

Վաղարշապատի ընտրական օկրուգ՝ № 147: (կենտրոնը՝ Վաղարշապատ քաղաքատիպ ավանը):

Վաղարշապատի և Հոկտեմբերյանի շրջանները (Աղջարխի, Արմալույի, Արտաշարի, Գեչրլույի, Իգդալույի, Ղուռուղարագի, Մարգարայի, Ուզունոբայի և Եվջիլարի գյուղխորհուրդները):

Հոկտեմբերյանի ընտրական օկրուգ՝ № 148: (կենտրոնը՝ Հոկտեմբերյան բանվորական ավանը):

Թալինի և Հոկտեմբերյանի շրջանները



(Միրզախանի, Խերբեկլույի, Նոր-Արմավիրի, Հոկտեմբերյանի, Սարդարաբադի, Սովետականի, Բամբակաշատի, Քյարագարխի, Ջանֆիդայի, Ջաֆարաբադի, Մեծ-Շահրիարի և Արմավիրի գյուղխորհուրդները):

Գորիսի ընտրական օկրուգ՝ № 149: (կենտրոնը՝ Գորիս քաղաքատիպ ավանը):

Սիսիանի և Գորիսի շրջանները (Ալիղուլիշենի, Վերինշենի, Գորիսի, Քարահունջի, Քարաշենի, Գոռնիձորի, Տեղի և Խանածախի գյուղխորհուրդները):

Ղափանի ընտրական օկրուգ՝ № 150: (կենտրոնը՝ Ղափան բանվորական ավանը):

Ղափանի և Գորիսի շրջանները (Տաթևի, Շուռնուխի, Ցերիցաթումբի, Գայլաձորի, Ցայջիի, Շինուհայրի, Խնձորեսկի և Խոտի գյուղխորհուրդները):

(ՏԱՍՍ)

# ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ ԽՍՀ-ՈՒՄ ՅԵՎ ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԻ ԱՊԱՀՈՎՈՒՄԸ

Հաղթանակած սոցիալիզմի Ստալինյան Սահմանադրությունն ազգային հարցում ցուցադրում է ՀամԿ(բ)Կ-ի գլխավոր գծի լիակատար հաղթանակը:

Լենինի-Ստալինի բոլշևիկյան կուսակցության հին ծրագրային լոզունգն ազգերի ինքնորոշման իրավունքի մասին՝ ընդհուպ մինչև անջատումն իրականացրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը: Պրոլետարիատի դիկտատուրան ազատագրեց բազմաթիվ ազգությունների հին ռուսաստանյան կայսրության — այդ «ժողովուրդների բանտի» — քաղաքական ու տնտեսական բազմամյա դաժան ստրկացումից և ճնշումից, բուրժուական-կալվածատիրական շահագործումից, ազգային կուլտուրական պահանջների վոչնչացու-



մից, ցարական չինովնիկների կամայականությունից և ծաղր ու ծանակից:

Ռուսաստանի ազատագրված ժողովուրդները պետական անջատման իրավունք ստացան — իրավունք, արձանագրված ՀամԿ(բ)Կ ծրագրում, ընդունված ՌԿ(բ)Կ 8-րդ համագումարի կողմից 1919 թվի մարտ ամսին:

1922 թվի դեկտեմբերին հիմնված Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը Միության բոլոր ազգություններին, առաջներում ցարական Ռուսաստանի ճնշված ազգությունների բազմամիլիոն մասսաներին, հասցրեց քաղաքական կուլտուրական կյանքի բարձրության, հաղորդակից դարձրեց սոցիալիստական շինարարությանը, սոցիալիստական կուլտուրային, պետության կառավարմանը:

Խորհուրդների համամիութենական Արտակարգ 8-րդ համագումարին տված իր զեկուցման մեջ ընկ. Ստալինը Խորհրդային Միության ստեղծման վողջ պրոցեսը հետևյալ կերպ բնութագրեց՝ «Ինչպես հայտնի յե, Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միու-

թյունը կազմվել է 1922 թվականին՝ ԽՍՀ Միության Խորհուրդների առաջին համագումարում: Նա կազմվել է ԽՍՀ Միության ժողովուրդների հավասարության ու կամավորության սկզբունքներով ... Դա այն ժամանակաշրջանն էր, երբ հարաբերությունները ժողովուրդների միջև դեռ ինչպես հարկն է չէին կարգավորված, երբ մեծռուսների հանդեպ ցուցաբերվող անվստահության մնացուկները դեռ չէին անհետացել, երբ կենտրոնախույս ուժերը դեռ շարունակում էին գործել: Հարկավոր էր այդ պայմաններում կարգավորել ժողովուրդների եղբայրական համագործակցությունը՝ տնտեսական, քաղաքական ու ռազմական փոխադարձ օգնության հիման վրա, միացնելով նրանց որպես Միության բազմազգ պետություն...

Սոցիալիզմի հիմքի վրա ստեղծված բազմազգ պետության կազմելու փորձը լիովին հաջողվել է: Դա Լենինյան ազգային քաղաքականության անկասկածելի հաղթությունն է:

Ինչով բացատրել այս հաղթանակը:

Ազգամիջյան կռիվների հիմնական կազ-



մակերպիչներ հանդիսացող շահագործող դասակարգերի բացակայությամբ, փոխադարձ անվստահություն առաջացնող և ազգայնական կրքեր բորբոքող շահագործման բացակայությամբ, բանվոր դասակարգի իշխանության գլուխ լինելը, մի դասակարգ, որը հանդիսանում է ամեն տեսակ ստրկացման թշնամի և ինտերնացիոնալիզմի գաղափարների հավատարիմ կրող, ժողովուրդների փոխադարձ օգնության իրական կենսագործմամբ տնտեսական ու հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում. վերջապես, ԽՍՀՄ-ի ժողովուրդների ազգային կուլտուրայի ծաղկումով՝ ազգային ըստ ձևի, սոցիալիստական ըստ բովանդակության, — այս բոլորը և սրանց նման գործոնները հասցրին այն բանին, որ արմատապես փոխվեց ԽՍՀՄ-ի ժողովուրդների կերպարանքը, անհայտացավ նրանց միջից փոխադարձ անվստահության զգացմունքը, զարգացավ նրանց մեջ փոխադարձ բարեկամության զգացմունքը և այսպիսով կարգավորվեց ժողովուրդների իսկական եղբայրական համագործակցությունը, միասնական միութենական պետության սիստեմում:

Իբրև արդյունք մենք ունենք այժմ միանգամայն կազմակերպված և բոլոր փորձություններին դիմացած բազմազգ սոցիալիստական պետություն, որի ամրությանը կարող էր նախանձել ամեն մի ազգային պետություն աշխարհի ամեն մի մասում[1])»:

## ԻՆՉՈՎ Ե ԲԱՑԱՏՐՎՈՒՄ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՅԵՎ ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՐԳՈՒՄ ՅԵՂԱԾ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

Լենինյան — ստալինյան ազգային քաղաքականության հիման վրա ձեռք բերված, աշխարհում չտեսնված այդ վիթխարի հաջողությունները, ապահովում են ԽՍՀՄ-ի բազմազգանի խոշոր ու մանր ժողովուրդների իրավահավասարությունը, վորոնք ակտիվ ու համերաշխ մասնակցում են սոցիալիզմի հաղթական շինարարությանը: Այդ խոշորագույն նվաճումներին ո-

1) Ի. Վ. Ստալին, «ԽՍՀ Միության Սահմանադրության նախագծի մասին», եջ 18—20, ՀԿ(բ)Կ ԿԿ, Կուսհրատ, 1936 թ.:



րենսդրությամբ ամրագրված են հաղթական սոցիալիզմի Ստալինյան Սահմանադրության մեջ — համաշխարհային պատմական նշանակություն ունեցող փաստաթղթի մեջ: ԽՍՀՄ-ի Սահմանադրությունն անխախտելի որենք է հայտարարում ԽՍՀ Միության ժողովուրդների իրավահավասարությունը, անկախ նրանց ազգությունից ու ռասայից՝ տնտեսական, պետական, կուլտուրական և հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում:

Ազգային իրավահավասարության սոցիալիստական որենքով ապահովված այդ յերաշխիքից բղխում է բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետության որենքների առաջ խիստ պատասխանատվություն իրավունքների վորևե ուղղակի կամ անուղղակի սահմանափակման, կամ ընդհակառակը, ռասայական ու ազգային պատկանելիության կապակցությամբ՝ քաղաքացիների համար ուղղակի կամ անուղղակի առավելություններ սահմանելու, ինչպես նաև ռասայական ու ազգային բացառիկության կամ ատելության արհամարհանքի համար (ԽՍՀՄ Սահմանադրության 123-րդ հոդ.):

Այդ իրավահավասարությունն ապա-

հովված է նաև Խ. Ս. Հ. Միության ընտրական սիստեմով, վորովհետև հիմնված է ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի վրա, գաղտնի քվեարկությամբ: ԽՍՀՄ-ի Սահմանադրության 135-րդ հոդվածն, ասում է՝

«Պատգամավորների ընտրությունները ընդհանուր են. ԽՍՀՄ-ի բոլոր քաղաքացիները, վորոնք 18 տարեկան են, անկախ ռասսայական ու ազգային պատկանելությունից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից, իրավունք ունեն մասնակցելու պատգամավորների ընտրություններին և ընտրվելու, բացի խելագարներից և այն անձերից, վորոնք դատարանի կողմից դատապարտված են — ընտրական իրավունքների զրկումով»:

ԽՍՀՄ-ի ժողովուրդների իսկական իրավահավասարության ցայտուն արտահայտությունը, օրենսդրությամբ ամրացված Ստալինյան Սահմանադրության մեջ, հանդիսանում է նաև ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի բազմազգի Խորհրդային Միու-



թյան պետական իշխանության բարձրագույն օրգանի յերկպալատային սիստեմը:

ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհուրդը բաղկացած է յերկու իրավահավասար պալատներից՝ Միության Խորհրդից և Ազգությունների Խորհրդից: Յերկու պալատի անհրաժեշտությունն ընկ. Ստալինը պատճառաբանեց հետևյալ կերպ.

«Աննպատակահարմար են համարում յերկու պալատների ստեղծումը և առաջարկում են վոչնչացնել Ազգությունների Խորհուրդը... Միապալատային սիստեմն ավելի լավ կլիներ, քան յերկպալատայինը, յեթե ԽՍՀՄ-ն միանական ազգային պետություն ներկայացներ... ԽՍՀՄ-ն, ինչպես հայտնի յե, բազմազգ պետություն է: Մեզ մոտ կա գերագույն մարմին, վորտեղ ներկայացված են ԽՍՀՄ-ի բոլոր աշխատավորների ԸՆԴՀԱՆՈՒՐ շահերը՝ անկախ նրանց ազգությունից: Դա Միության Խորհուրդն է: Բայց ԽՍՀ Միության ազգությունները, բացի ընդհանուր շահերից, ունեն նաև ԻՐԵՆՑ ԱՌԱՆՁԻՆ, ՅՈՒՐԱՀԱՏՈՒԿ շահերը, վորոնք կապված են նրանց ազգային առանձնահատկությունների հետ: Կարելի՞ յե արդյոք արհամարհել այդ յու-

րահատուկ շահերը: Ո՛չ, չի կարելի: Պե՞տք է արդյոք հատուկ գերագույն մարմին, որն արտացոլեր հենց այդ յուրահատուկ շահերը: Անպայման պետք է: Կասկած չի կարող լինել, որ առանց այդպիսի մարմնի անհնարին կլիներ այնպիսի բազմազգ պետություն կառավարելը, ինչպիսին ԽՍՀՄ-ն է: Այդպիսի մարմին է հանդիսանում յերկրորդ պալատը, ԽՍՀՄ-ի Ազգությունների Խորհուրդը»[1]):

Այն սպեցիֆիկ խնդիրները, որոնց լուծումը դրված է Ազգությունների Խորհրդի վրա, պայմանավորում են և նրա ձևավորումը, նրա ընտրության յեղանակները: Այն ժամանակ, յերբ Միության Խորհուրդը ԽՍՀՄ-ի քաղաքացիների կողմից ընտրվում է համաձայն ընտրական օկրուգների ըստ նորմայի՝ մեկ պատգամավոր 300 հազար բնակիչներից (հոդված 34-րդ) — Ազգությունների Խորհուրդը ԽՍՀՄ-ի քաղաքացիների կողմից ընտրվում է ըստ Միութենական և ավտոնոմ հանրապետությունների, ավտոնոմ մարզերի և

[1]) Ի. Վ. Ստալին — «ԽՍՀ Միության Սահմանադրության Նախագծի մասին», եջ 53, ՀԿ(բ)Կ ԿԿ Կուսհրատ, 1936 թ.:



ազգային օկրուգների ըստ նորմայի՝ 25-ական պատգամավոր յուրաքանչյուր Միութենական հանրապետությունից, 11-ական պատգամավոր յուրաքանչյուր ավտոնոմ հանրապետությունից, 5-ական պատգամավոր յուրաքանչյուր ավտոնոմ մարզից և մեկական պատգամավոր յուրաքանչյուր ազգային օկրուգից (հոդված 35-րդ):

ԽՍՀՄ-ի Սահմանադրության այդ հոդվածներից յերևում է, որ Միության Խորհուրդը կազմվում է ըստ հավասար ընտրական օկրուգների, բնակչության համահավասար քանակից: ԽՍՀՄ-ի բոլոր քաղաքացիները հավասար են, նրանք բոլորը հավասար հիմունքներով ընտրում են Միության Խորհուրդը — ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի յերկու իրավահավասար պալատներից մեկը: Ազգությունների Խորհուրդը ձևավորվում է այնպես, որպեսզի բոլոր ազգությունները, որոնք միավորված են պետականորեն ձևավորված ազգային վարչական-տերիտորիալ միավորի մեջ, ներկայացվեն Ազգությունների Խորհրդում:

Յեթե Սահմանադրությունը սահմաներ ընտրությունների նույն կարգն ըստ հավասար ընտրական օկրուգների, միահավասար

քանակություն ունեցող բնակչությունից Ազգությունների Խորհրդում, ապա փոքր ազգությունները իրենց փոքրաքանակության պատճառով չեյին ներկայացվի Ազգությունների Խորհրդի մեջ: Դրանով խախտված կլինեյին ՀամԿ(բ)Կ և Խորհրդային իշխանության ազգային քաղաքականության հիմնական սկզբունքները, վորոնք ապահովում են լիակատար իրավական քաղաքական, տնտեսական- կուլտուրական հավասարություն ԽՍՀՄ-ի բոլոր մեծ ու փոքր ժողովուրդների համար: Այն կարգը, վորպիսին սահմանված է ԽՍՀՄ-ի Սահմանադրության մեջ և ընտրական որենքում Ազգությունների Խորհրդի ընտրությունների վերաբերյալ, լիովին ապահովում է փոքր ժողովուրդների ներկայացուցչությունը, այդպիսով հնարավորություն է տալիս սրանց պաշտպանել իրենց ազգային յուրահատուկ շահերը, Խորհրդային իշխանության պետական իշխանության բարձրագույն մարմնում:



# ԸՆՏՐԱԿԱՆ ՈԿՐՈՒԳՆԵՐԻ ՄԵԾՈՒԹՅԱՆ ՄԻՋԵՎ ՅԵՂԱԾ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ԽՍՀՄ-Ի ԱԶԳՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԵՋ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԻ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆ ԱՌԱՋ ՉԻ ԲԵՐՈՒՄ

Ելնելով ԽՍՀՄ-ի Ստալինյան Սահմանադրությունից, ընտրական որենքը, ՀամԿ(բ)Կ ԿԿ Պլենումի կողմից հավանության արժանացած և հաստատված ԽՍՀՄ-ի ԿԳԿ 7-րդ գումարման 4-րդ նստաշրջանի կողմից 1937 թ. հուլիսի 9-ին, մատնանշում է, վոր Ազգությունների Խորհրդի ընտրությունները նույնպես կատարվում են ըստ ընտրական ոկրուգների: Յուրաքանչյուր Միութենական հանրապետություն բաժանվում է 25 ընտրական ոկրուգի, յուրաքանչյուր ավտոնոմ հանրապետություն՝ 11 ոկրուգի, յուրաքանչյուր ավտոնոմ մարզ՝ 5 ոկրուգի և յուրաքանչյուր ազգային ոկրուգ, վորը տալիս է մեկ պատգամավոր Ազգությունների Խորհրդում, հանդիսանում է մեկ ընտրական ոկրուգ:

Ազգությունների Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգն ըստ բնակչության քանակի և տարբեր ազգային պետական կազմության, միատեսակ չեն լինի:

Միութենական հանրապետություններում Ազգությունների Խորհրդի ընտրության համար կկազմվեն ընտրական օկրուգներ մեկ պատգամավոր բնակչության հետևյալ քանակից (բնակչությունը հազարներով).

| | |
|---|---|
| ՌՍՖՍՀ | 4200-ից[1] |
| ՈւԽՍՀ | 1280-ից |
| Ղազախական ԽՍՀ | 272-ից |
| ԲԽՍՀ | 218-ից |
| Ուզբեկական ԽՍՀ | 125-ից |
| Վրացական ԽՍՀ | 125-ից |
| Ադրբեջանական ԽՍՀ | 116-ից |
| Տաջիկական ԽՍՀ | 53-ից |
| Կիրգիզական ԽՍՀ | 52-ից |
| Թուրքմենական ԽՍՀ | 51-ից |
| Հայկական ԽՍՀ | 45-ից |

Այդ թվերը ցույց են տալիս, որ բոլոր միութենական հանրապետություն-

[1]) Բոլոր մեջ բերած տվյալները վերցված են կլորացրած 1933 թ. հունվարի մեկի բնակչության քանակի տվյալներից:



րում, բացառությամբ ՌՍՖՍՀ և ՈւԽՍՀ-ից, Ազգությունների Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգները կլինեն փոքր, իսկ մի քանիսում անգամ նշանակելի չափով փոքր, քան Միության Խորհրդի ընտրությունների ընտրական օկրուգները:

Ընտրական օկրուգներն Ազգությունների Խորհրդի ընտրությունների համար ավտոնոմ հանրապետություններում կկազմվեն հետևյալ հաշվով (բնակչությունը հազարներով).

| | |
|---|---|
| Բաշկիրական ԱԽՍՀ | 263-ից մեկը |
| Թաթարական ԱԽՍՀ | 253-ից մեկը |
| Մորդովական ԱԽՍՀ | 129-ից մեկը |
| Չուվաշական ԱԽՍՀ | 87-ից մեկը |
| Դաղստանի ԱԽՍՀ | 86-ից մեկը |
| Ուդմուրդական ԱԽՍՀ | 79-ից մեկը |
| Ղրիմի ԱԽՍՀ | 66-ից մեկը |
| Չեչենո-Ինգուշական ԱԽՍՀ | 59-ից մեկը |
| Մոլդավական ԱԽՍՀ | 56-ից մեկը |
| Բուրյաթ-Մոնղոլական ԱԽՍՀ | 56-ից մեկը |
| Մերձվոլգյան Գերմանական ԱԽՍՀ | 52-ից մեկը |
| Մարիական ԱԽՍՀ | 50-ից մեկը |
| Կարա-Կալպակական ԱԽՍՀ | 34-ից մեկը |
| Կարելական ԱԽՍՀ | 34-ից մեկը |

Յակուտական ԱԽՍՀ 30-ից մեկը
Հյուսիսային Օսեթական ԱԽՍՀ 26-ից մեկը
Կաբարդինո-Բալկարական ԱԽՍՀ 25-ից մեկը
Կոմի ԱԽՍՀ 25-ից մեկը
Աբխազական ԱԽՍՀ 24-ից մեկը
Կալմիկական ԱԽՍՀ 17-ից մեկը
Աջարական ԱԽՍՀ 14-ից մեկը
Նախիջևանի ԱԽՍՀ 11-ից մեկը

Մի շարք ավտոնոմ հանրապետություններում ընտրական օկրուգների չափն ավելի մեծ է քան Միութենական մի քանի հանրապետություններում:

Ավտոնոմ մարզերում օկրուգների չափերը նույնպես տարբեր են. մեկ օկրուգը կկազմվի հետևյալ հաշվով (բնակչությունը հազարներով).

Խակասական ավտոնոմ մարզ 35-ից մեկը
Լեռնային Ղարաբաղի ավտոնոմ մարզ 31-ից մեկը
Ադիգեյական ավտոնոմ մարզից 27-ից մեկը
Օյրոթական ավտոնոմ մարզից 24-ից մեկը
Կարաչայական ավտոնոմ մարզից 21-ից մեկը
Հարավ-Օսեթական ավտոնոմ մարզից 19-ից մեկը



Չերքեզական ավտոնոմ մարզից 16-ից մեկը
Հրեական ավտոնոմ մարզից 10-ից մեկը
Լեռնային Բադախշանի մարզից 7-ից մեկը

Ճիշտ այնպես էլ ավտոնոմ մարզերի մեծամասնության ընտրական օկրուգներն ավելի մեծ են քան մի քանի ավտոնոմ հանրապետություններում:

Այդպիսի պատկեր է նաև ազգային օկրուգներում, որոնք ընդամենը 10[1]) և որոնք բոլորը գտնվում են ՌՍՖՍՀ-ում, մտնելով նրա առանձին մարզերի և երկրների մեջ: Նենեցական ազգային օկրուգը մեկ պատգամավոր է տալիս, 17 հազար բնակիչներից, Կորյակյան ազգային օկրուգը — 13 հազարից, Վիտիմո-Օլեկմինսկանը — 10 հազարից, Տայմիրյանը — 8 հազարից, Եվենկիյանը — 5 հազարից:

Այսպիսով և ազգային օկրուգների մեջ, որոնք ունեն ոչ շատ քանակությամբ բնակչություն, կան այնպիսիք, որոնք ըստ բնակչության, ավելի շատ են առանձին ավ-

1) 1. Վիտիմո-Օլեկմինսկան (Արևելյան Սիբիրական մարզ), 2. Կարելյական (Կալինինի մարզ), 3. Կոմի-Պերմյական (Սվերդլովսկի մարզ), 4. Կորյակական (Կամչատկայի մարզ), 5. Նենեցական

տոնոմ հանրապետությունների և ավտո-
նոմ մարզերի ընտրական օկրուգներից:

Ընտրական օկրուգների տարբեր մե-
ծությունն ըստ բնակչության քանակի,
վորպիսին գոյություն ունի Միութենական
և ավտոնոմ հանրապետություններում,
ավտոնոմ մարզերում և ազգային օկրուգ-
ներում ՍՍՀՄ-ի ազգությունների մեջ ի-
րավունքների խտրություն չի առաջ բե-
րում: Հավասար քանակությամբ պատգա-
մավորներ են տալիս, անկախ բնակչության
քանակից, բոլոր Միութենական հանրապե-
տությունները (ՌՍՖՍՀ — 105 միլիոնից
և Հայկական ՍՍՀ-ից 1109 հազարից), բո-
լոր ավտոնոմ հանրապետությունները
(Բաշկիրական ԱՍՍՀ — 2890 հազար բնա-
կիչից և Նախիջևանի ԱՍՍՀ — 117 հազա-
րից), բոլոր ավտոնոմ մարզերը (Խակասա-

(Հյուս. Սառուցյալ Օվկիանոսի և Օխոտսկ
Ծովի կղզի, Հյուսիսային մարզ), 6. Օստ-
յակո-Վոգուլյան (Օմսկի մարզ), 7. Տայ-
մըրյան (Կրասնոյարսկի երկիր), 8.
Կորյակյան (Կամչատկայի մարզ), 9.
Էվենկյան (Կրասնոյարսկի երկիր), 10.
Յամալո-Նենեցյան (Օմսկի մարզ):





կան ավտոնոմ մարզը — 174 հազար բնա-
կիչներից և Լեռնային - Բադախշանական
ավտոնոմ մարզը — 36 հազարից), բոլոր
ազգային օկրուգները: Դեռ ավելին՝ ազ-
գությունների իրավական լիակատար հա-
վասարությունն իր ավելի ցայտուն հա-
տատում է ստանում այն անխախտելի
փաստով, վոր Ազգությունների Խորհր-
դում մի պատգամավոր ընտրելու միևնույն
առիթանի իրավունք ունեն, ինչպես ազգա-
յին օկրուգի բնակչությունը, այնպես էլ
յուրաքանչյուր ընտրական օկրուգի բնակ-
չությունը՝ Միութենական հանրապետու-
թյունո՞ւմ է արդյոք, ավտոնոմ հանրապե-
տությունո՞ւմ, թե՞ ավտոնոմ մարզում:
ՌՍՖՍՀ-ն Ազգությունների Խորհրդում մեկ
պատգամավոր է տալիս, ըստ յուրաքան-
չյուր ընտրական օկրուգի բնակչության
4200 մարդից այնպես, ինչպես մեկ պատ-
գամավոր է տալիս Բաշկիրական ԱՍՍՀ
ընտրական օկրուգը 263 հազար բնակիչնե-
րից, կամ Խակասական ավտոնոմ մարզի
ընտրական օկրուգը — 35 հազարից, կամ
Նենեցական ազգային օկրուգը — 17 հա-
զարից, կամ Նախիջևանի ԱՍՍՀ—11 հազա-
րից, կամ Լեռնային-Բադախշանական ավ-

տոնոմ մարզը — 7 հազարից, կամ Էվենկական ազգային օկրուգը 5 հազար բնակչությունից: Այդ ապահովված է ԽՍՀՄ-ի Սահմանադրությամբ (հոդված 35-րդ) և ընտրական օրենքով (հոդված 22-րդ), վորոնք այսպիսով ապահովում են ԽՍՀՄ-ի ազգությունների լիակատար իրավահավասարությունը, չսահմանափակելով վոչ մեծ և վոչ փոքր ժողովուրդների իրավունքները և միաժամանակ ապահովում է վոչ բազմաքանակ ժողովուրդների ներկայացուցչությունների Ազգությունների Խորհրդում: Օրինակ՝ ՌԽՖՍՀ, վորպես ֆեդերատիվ միավորում, Ազգությունների Խորհրդում կունենա 252 պատգամավոր: Այդ նշանակում է, վոր ՌԽՖՍՀ-ն, վորպես Միութենական Հանրապետություն, կտա 25 պատգամավոր, իսկ նրա տերիտորիայում գտնվող 17 ավտոնոմ հանրապետությունները, 6 ավտոնոմ մարզերը և 10 ազգային օկրուգները, վորտեղ հաշվվում է մոտավորապես 16 միլիոն բնակչություն, այսինքն՝ համարյա 7 անգամ քիչ, քան ամբողջ Միութենական հանրապետությունը (105 միլիոն), տալիս են 227 պատգամավոր, այսինքն՝ 9,5 անգամ ավելի, քան



ՌԽՖՍՀ-ն, վորպես Միութենական Հանրապետություն:

Վրացական ԽՍՀ կտա 52 պատգամավոր, նրա տերիտորիայում գտնվող 3 ազգային միավորները (Աբխազական ԱԽՍՀ, Աջարական ԱԽՍՀ և Հարավ-Օսեթական ավտոնոմ մարզ), և վորտեղ հաշվվում է 509 հազար բնակչություն, այսինքն՝ 6 անգամ քիչ, քան ամբողջ Միութենական հանրապետությունը, կտան 27 պատգամավոր, այն ժամանակ, յերբ Վրացական ԽՍՀ ամբողջությամբ ավելի քան 3 միլիոն բնակչությունից, կտա 25 պատգամավոր:

Ուկրաինական ԽՍՀ, վորտեղ հաշվվում է մոտավորապես 32 միլիոն բնակչություն, Ազգությունների Խորհրդում կունենա 56 պատգամավոր: 25 պատգամավոր ՈՒԽՍՀ-ից, վորպես միութենական հանրապետություն և 11 պատգամավոր Մոլդական ԱԽՍՀ-ից՝ 616 հազար ազգաբնակչությամբ, ավելի քան 50 անգամ քիչ, քան ամբողջ Ուկրաինական հանրապետությունը:

Ազգությունների Խորհրդում ընդամենը կլինի 572 պատգամավոր, համարյա 4 անգամ ավելի ԽՍՀՄ-ի ԿԳԿ 7-րդ գումարման

*Ազգությունների Խորհրդի քանակական կազմից, վորը հաշվվում ե 150 հոգի և համարյա այնքան, վորքան կլինի Միության Խորհրդում: Այդ ևս մի ապացույց ե (շատերի թվում) Գերագույն Խորհրդի կազմում յեղած յերկու պալատների լիակատար և իսկական իրավահավասարության:*

## ԸՆՏՐԱԿԱՆ ՈՐԵՆՔՆ ԱՊԱՀՈՎՈՒՄ Ե ՓՈՔՐ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՇԱՀԵՐԻ ՀԱՏՈՒԿ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Ազգությունների Խորհրդում ընտրությունների ճշտությունն ապահովելու համար, խոշոր նշանակություն ունեն այն ընտրական հանձնաժողովները, վորոնք կըկազմվեն «ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի ընտրությունների Կանոնադրության» հիման վրա Ազգությունների Խորհրդի ընտրությունների բոլոր ընտրական օկրուգներում: Այդպիսի ընտրական հանձնաժողովներ կստեղծվեն յուրաքանչյուր միութենական և ավտոնոմ հանրապետություններում, յուրաքանչյուր ավտոնոմ մարզում*



*և յուրաքանչյուր մարզային օկրուգում («Կանոնադրություն», հոդված 37-րդ): Այդ հանձնաժողովները ղեկավարելու յեն Ազգությունների Խորհրդի ընտրությունների կազմակերպումն ու անցկացումն ամբողջապես համապատասխան Միութենական հանրապետության ավտոնոմ հանրապետության, ավտոնոմ մարզերի և ազգային օկրուգի: Բացի դրանից, Ազգությունների Խորհրդի ընտրությունների յուրաքանչյուր օկրուգում նույնպես ստեղծվում ե Ազգությունների Խորհրդի ընտրությունների օկրուգային ընտրական հանձնաժողով (հոդված 45 և 48):*

*Օրինակ՝ Հայկական ԽՍՀ-ում կըստեղծվեն Ազգությունների Խորհրդի ընտրությունների հանրապետական ընտրական հանձնաժողով և 25 օկրուգային ընտրական հանձնաժողովներ:*

*Ադրբեջանական ԽՍՀ-ում կստեղծվեն՝ 1) Միութենական հանրապետության ընտրական հանձնաժողով և 25 օկրուգային ընտրական հանձնաժողովներ, 2) Նախիջևանի ավտոնոմ հանրապետության ընտրական հանձնաժողով և 11 օկրուգային ընտրական հանձնաժողով, 3) Լեռնային*

Ղարաբաղի ավտոնոմ մարզի ընտրական հանձնաժողով և 5 օկրուգային ընտրական հանձնաժողով:

ՌԽՖՍՀ-ում կազմվեն՝ 1) Միութենական հանրապետության ընտրական հանձնաժողով և 25 օկրուգային ընտրական հանձնաժողովներ, 2) 17 ընտրական հանձնաժողովներ, ըստ ավտոնոմ հանրապետությունների և 11-ական օկրուգային ընտրական հանձնաժողովներ յուրաքանչյուր ավտոնոմ հանրապետությունում, 3) 6 ընտրական հանձնաժողովներ ըստ ավտոնոմ մարզերի և 5-ական օկրուգային ընտրական հանձնաժողովներ յուրաքանչյուր ավտոնոմ մարզում, 4) 10 օկրուգային ընտրական հանձնաժողովներ ըստ ազգային օկրուգների, յուրաքանչյուր օկրուգում մեկական:

Բացառիկ քաղաքական նշանակություն ունի «ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի ընտրությունների Կանոնադրության» 68-րդ հոդվածը, որը ցույց է տալիս, թե ընտրական բյուլլետենները տպագրվում են համապատասխան ընտրական օկրուգի բնակչության լեզվով: Դրանում արտահայտվում է ուշադրություն դեպի ԽՍՀՄ-ի բա-



լոր մեծ ու փոքր ազգությունները, անկախ նրանց կուլտուրական մակարդակից:

Լենինի-Ստալինի կուսակցությունը և Խորհրդային իշխանությունը շահագրգռված են այն բանում, վորպեսզի ԽՍՀՄ-ի բոլոր ժողովուրդներն ակտիվ մասնակցություն ցույց տան Խորհրդային իշխանության բարձրագույն մարմնի՝ ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի կազմավորմանը: Դրանում շահագրգռված են ԽՍՀՄ-ում բնակվող բոլոր ժողովուրդները: Դրա համար էլ մեր ընտրական օրենքը խորապես ինտերնացիոնալ բնույթ ունի:

Ազգությունների Խորհրդի ընտրությունների վողջ սխեման ակնհայտորեն հայտարարում է այն բացառիկ յերաշխիքը, վորով ԽՍՀՄ-ի Սահմանադրությունը և ընտրական օրենքն ապահովում են ԽՍՀՄ-ի բոլոր ազգությունների վոչ միայն լիակատար իրավահավասարությունը, այլև փոքր ժողովուրդների շահերի հատուկ պաշտպանությունն Ազգությունների Խորհրդում, նրանց ավելի մեծ թվով ներկայացուցչություն տալով: Այդ յերևում է վոչ միայն նրանից, վոր փոքր ազգային միավորներն ամբողջապես կներկայացվեն ավելի շատ, քան խոշոր ազգային միավոր-

ները, ինչպես Միութենական հանրապետությունները, այլև նրանով, որ ազգային շրջաններում ընտրողներն ընտրելու յեն Ազգությունների Խորհրդում յերկու պատգամավոր:

Այսպես օրինակ, ազգային օկրուգի ընտրողը քվեարկում է Ազգությունների Խորհրդում մեկ պատգամավորի համար իր ամբողջ օկրուգից և մի այլ պատգամավորի համար Ազգությունների Խորհրդում, Միութենական իր հանրապետության կողմից, ըստ ընտրական օկրուգի, որն ըստ բնակչության քանակի կազմում է այդ հանրապետության տերրիտորիայի մեկ քըսանհինգերորդ մասը: Նույնը, այսինքն՝ 2 պատգամավորի համար քվեարկելու յեն ընտրողները, որոնք ապրում են ավտոնոմ մարզում, նույնը և ավտոնոմ հանրապետության մեջ:

Այսպես, ընտրողը, որն ապրում է Նենեցական ազգային օկրուգում, քվեարկում է Ազգությունների Խորհրդում մեկ պատգամավորի համար իր ազգային օկրուգից և Ազգությունների Խորհրդում յերկրորդ պատգամավորի համար ՌՍՖՍՀ ընտրական այն օկրուգից, որի կազմի



մեջ մտնում է Նենեցական ազգային օկրուգը:

Ընտրողը, որն ապրում է Օյրոթական ավտոնոմ մարզում, քվեարկում է Ազգությունների Խորհրդում մեկ պատգամավորի համար, իր մարզի ըստ ընտրական օկրուգի, որն ըստ բնակչության քանակի կազմում է մարզի մեկ հինգերորդական մասը: Այդ նույն ընտրողը քվեարկում է Ազգությունների Խորհրդում մեկ պատգամավորի համար ՌՍՖՍՀ-ի կողմից ըստ համապատասխան ընտրական օկրուգի, որի կազմի մեջ մտնում է Օյրոթական ավտոնոմ մարզը:

Այդպես էլ կատարվում է ընտրությունններն ավտոնոմ հանրապետություններում: Օրինակ՝ ընտրողը, որն ապրում է Կարա-Կալպակական ԱԽՍՀ-ում, քվեարկում է Ազգությունների Խորհրդում մեկ պատգամավորի համար իր ավտոնոմ հանրապետության կողմից, ըստ ընտրական օկրուգի, որն ըստ բնակչության քանակի կազմում է տվյալ ավտոնոմ հանրապետության մեկ տասնմեկերորդական մասը: Նույն մարդը քվեարկում է Ազգությունների Խորհրդում մեկ պատգամավորի համար

Ուզբեկական ԽՍՀ-ի կողմից, համապատասխան ընտրական օկրուգից, որի կազմի մեջ մտնում է Կարակալպակական ԱԽՍՀ այդ մասը, որտեղ ապրում է տվյալ ընտրողը:

Այդ պետք է հասկանալ այսպես: Ավտոնոմ հանրապետության ընտրական օկրուգների տերրիտորիաները չեն համընկնում Միութենական հանրապետության ընտրական օկրուգների տերրիտորիաների հետ: Ճիշտ այդպես էլ այս կամ այն ավտոնոմ հանրապետության բնակչության քանակը չի համընկնում ըստ Ազգությունների Խորհրդի ընտրության Միութենական Հանրապետության ընտրական օկրուգի բնակչության քանակի հետ:

Ուզբեկական ԽՍՀ-ից ընտրական օկրուգին (ըստ Ազգությունների Խորհրդի ընտրությունների) ընկնում են 217 հազար բնակիչ, իսկ Կարա-Կալպակիայում ընդամենը ապրում են 374 հազար բնակիչ:

Բերած բոլոր դեպքերում Ազգությունների Խորհրդում ընտրողը քվեարկում է 2 պատգամավորի համար: Այդպես է լինելու բոլոր այն Միութենական հանրապետություններում, որոնց կազմի մեջ մտնում



են ավտոնոմ հանրապետությունները, ավտոնոմ մարզեր և ազգային օկրուգներ, դրանք են՝ ՌԽՖՍՀ, ՈւԽՍՀ, Վրացական ԽՍՀ, Ուզբեկական ԽՍՀ և Տաջիկական ԽՍՀ, Բելոռուսական ԽՍՀ, Հայկական ԽՍՀ, Ղազախական ԽՍՀ, Կիրգիզական ԽՍՀ, Թուրքմենական ԽՍՀ և ՌԽՖՍՀ մարզերի և յերկրների ընտրողները քվեարկում են Ազգությունների Խորհրդում միայն մեկ պատգամավորի Միութենական իրենց Հանրապետությունից ըստ համապատասխան Միութենական Հանրապետության մեկ քսանհինգերորդական մասի:

## ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԸՆՏՐՈՂ ՔՎԵԱՐԿՈՒՄ Ե ՄԻԱՅՆ ՄԵԿ ԱՆԳԱՄ

Հաճախ այսպիսի հարց են տալիս՝ ընտրողը քանի՞ անգամ է քվեարկում ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի ընտրությունների ժամանակ — յերկո՞ւ անգամ, թե՞ յերեք անգամ[1]): Ոչ յերկու անգամ,

[1]) Մի քանիսն անգամ հարցնում են՝ չո՞րս անգամ թե՞ հինգ անգամ, սխալմամբ

վոչ ել յերեք: Ընտրողը քվեարկում ե միայն ՄԵԿ ԱՆԳԱՄ: Ընտրությունները մեզանում՝ վողջ Միությունում անցկացվելու յեն միաժամանակ, մի օրում, 18 ժամվա ընթացքում, միևնույն ընտրական շրջանում («Կանոնադրություն», հոդված 25, 71 և 74):

Ընտրողը գալիս ե ՄԵԿ ԱՆԳԱՄ (այդ մասին ընտրողների ցուցակում նշում ե արվում՝ տես հոդված 78-րդ) և ստանում ե ՄԵԿ ծրար և յերկու կամ յերեք բյուլլետեն նայած թե վորքան ե նրան հարկավոր ընտրել պատգամավորներ: Այդ նշանակում ե, վոր ԽՍՀՄ-ի մի շրջանում ընտրողն ստանում ե յերկու բյուլլետեն, վորպեսզի քվեարկի մեկ պատգամավորի Միության Խորհրդի համար և մյուս պատգամավորի՝ Ազգությունների Խորհրդի համար: ԽՍՀ Միության մի այլ շրջանում ընտրողն ստանում ե յերեք բյուլլետեն, վորպեսզի

---

յենթադրելով, վոր ազգային օկրուգը մըտնում է ավտոնոմ մարզի կազմի մեջ, իսկ սա — ավտոնոմ հանրապետության կազմի մեջ, վորն իր հերթին մտնում ե Միութենական հանրապետության կազմի մեջ:



քվեարկի մեկ պատգամավորի Միության Խորհրդի համար և 2 պատգամավորի՝ Ազգությունների Խորհրդի համար, ըստ վորում այդ յերկու վերջիններից ընտրողը քվեարկում ե մեկ բյուլլետենով, Ազգությունների Խորհրդի պատգամավորի համար, իր Միութենական Հանրապետության կազմից և յերկրորդ բյուլլետենով, իր ավտոնոմ հանրապետության, կամ ավտոնոմ մարզի, կամ ազգային օկրուգի պատգամավորի համար:

Այսպիսով մենք տեսնում ենք, վոր բոլոր դեպքերում ԽՍՀՄ-ի քաղաքացիները քվեարկում են ՄԵԿ ԱՆԳԱՄ: Այդ ամբողջապես համապատասխանում ե մեր Սահմանադրության և և մեր ընտրական սիստեմի սկզբունքներին:

## ՍՏԱԼԻՆՅԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԽՍՀՄ-ՈՒՄ ԱՊՐՈՂ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՅԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՅԵՐԱՇԽԻՔՆ Ե

Մեր ընտրական սիստեմն աշխարհում ամենադեմոկրատականն ե և ԽՍՀՄ-ի բո-

լոր ազգությունների լիակատար և հավասար իրավունքների ներկայացուցիչը, նա ազգային փոքրամասնությունների համար ներկայացնում է ապշեցուցիչ կոնտրաստ համեմատած իրավունքներում այն տարբեր սահմանափակումների հետ, վորոնք գոյություն ունեն կապիտալիստական երկրներում:

Այդ դրության պայծառ բնութագրությունը տվեց ընկ. Ստալինն իր զեկուցման մեջ Համամիութենական 8-րդ Արտակարգ Համագումարին՝ «Բուրժուական Սահմանադրությունները լռելյայն ելնում են այն նախադրյալներից, վոր ազգերը և ռասսաները չեն կարող իրավահավասար լինել, վոր կան լիիրավ ազգեր և վոչ լիիրավ ազգեր, վոր բացի դրանցից գոյություն ունի ազգերի կամ ռասսաների նաև երրորդ կատեգորիա, որինակ՝ գաղութներում, վորոնք ունեն է՛լ ավելի պակաս իրավունքներ, քան վոչ լիիրավ ազգերը: Այդ նշանակում է, վոր այդ բոլոր սահմանադրություններն իրենց հիմքում նացիոնալիստական են, այսինքն՝ տիրապետող ազ-



գերի սահմանադրություններ են»[1]):

Բավական է ասել, վոր աշխարհիս խոշորագույն պետություններին (Անգլիա, ԱՄՆ, Ֆրանսիա և այլն) պատկանող գաղութների բազմամիլիոն բնիկ ազգաբնակչությունը զրկված է իր մայր երկրի պարլամենտում ընտրական իրավունքից: Նույնը պահպանվում է հենց գաղութներում, ուր տեղական բնակչության մեծամասնությունը զանազան սահմանափակումների ոգնությամբ (գույքային, կրթական ցենզ և այլն) զրկված է ընտրական իրավունքից իր տեղական պարլամենտներում:

Հարավ-աֆրիկական Միության մեջ ընտրական իրավունքից ոգտվում են միայն սպիտակ ռասսային պատկանող բրիտանական քաղաքացիները, վորը տեղական մեծաքանակ բնակչությանը զրկում է ընտրություններին մասնակցելուց:

ԱՄՆ-ում, վորի Սահմանադրությունը հայտարարում է, թե՝ «Միացյալ Նահանգների քաղաքացիների ընտրություն-

1) Ի. Վ. Ստալին — «ԽՍՀՄ-ի Սահմանադրության նախագծի մասին», էջ 25—26, ՀԿ(բ)Կ ԿԿ Կուսհրատ, 1936 թ.:

ներին մասնակցելու իրավունքը չի կարող բացասվել կամ սահմանափակվել Միացյալ Նահանգների կամ առանձին նահանգների կողմից ռասսայական գույնի, մորթու կամ առաջիններում նրանց ստրկական կացության պատրվակով»: Նեգրերի ճնշող մեծամասնությունը զրկված է ընտրական իրավունքից, անգրագիտության անվան տակ: Բանը նրանումն է, որ ԱՄՆ-ի մի շարք նահանգներում գոյություն ունի օրենք, որը պահանջում է ընտրողից գիտենալ անգլերեն կարդալ և անգլերեն լեզվով մեկնաբանել Սահմանադրությունը: Այդ պահանջը զրկում է ընտրություններին մասնակցելուց ոչ միայն նեգրերին, այլև անգլերեն լեզվին չտիրապետող տարբեր կրոնի բազմաթիվ էմիգրանտներին:

Կանադայում ընտրական իրավունքից զրկված են ամբողջ տերրիտորիայի հնդկացիները, ինչպես և չինացիները, Սասկաչեան նահանգում ապրող հնդիկները, Բրիտանական Հնդկաստանից և այլն: Հարավային և Կենտրոնական Ամերիկայի Լատինական հանրապետություններում, զանազան սահմանափակումների անվան տակ,



փաստորեն ընտրություններից զրկված են հնդիկները:

Գաղութների և կիսագաղութների բնակչության, ինչպես և կապիտալիստական մի շարք յերկրների ազգային փոքրամասնությունների ընտրական իրավունքների սահմանափակումն արտահայտվում է կրթական ցենզի պահանջմամբ, վորին չեն կարող բավարարել առավել հետամնաց ազգային փոքրամասնությունները և տեղական բնակչությունը (օրինակ՝ Հնդկաստանում բնակչության միայն 8 տոկոսն է գրագետ):

Ազգային իրավունքների մեծ սահմանափակումն է հանդիսանում պետական լեզուն իմանալու պահանջը (Ալբանիայում, Հունգարիայու, Բուլղարիայում, Թուրքիայում):

Ազգային փոքրամասնությունների, գաղութային և կիսագաղութային ժողովուրդների քաղաքական իրավունքների սահմանափակման այս թռուցիկ և վոչ լրիվ թվարկումը բավականին ակնառու վկայում է քաղաքական և տնտեսական այն ճնշումն ու ստրկացումը, վորոնցում գտնըվում են բազմաքանակ ազգությունները

կապիտալիստական յերկրներում: 15 տարի առաջ, «Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմելու մասին» դեկլարացիայում կապիտալիզմի բանակի դրության մասին նկարագրված պատկերը վոչնչով չի փոխվել:

«Այնտեղ, կապիտալիզմի բանակում,— ազգային թշնամանք և անհավասարություն, գաղութային ստրկություն և շովինիզմ, ազգային ճնշումներ և ջարդեր, իմպերիալիստական գազանություններ և պատերազմներ»: Այդ տարիներին դրությունը կապիտալիզմի բանակում չբարելավվեց — այլ խիստ վատթարացավ:

Յեվ ամբողջովին այլ է դրությունը սոցիալիզմի բանակում, ուր անխախտ տիրապետում է ԽՍՀՄ-ի բազմաքանակ ժողովուրդների ազգային ազատության և իրական հավասարությունը, վստահությունը, փոխադարձ համերաշխությունը և յեղբայրական համագործակցությունը:

Ազգային քաղաքականության բնագավառում, Խորհրդային Միության նվաճումների Սոցիալիզմի յերկրի հետագա ել ավելի մեծ չափով ծաղկման համար ԽՍՀՄ-ի ժողովուրդների համերաշխության դերի



ու նշանակության փայլուն գնահատականը տվեց աշխատավոր մասսաների մեծ առաջնորդ՝ ընկ. ՍՏԱԼԻՆԸ իր ճառում՝ արտասանած Տաճիկստանի և Թուրքմենստանի առաջավոր կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների, կուսակցության և կառավարության ղեկավարների խորհրդակցության 1935 թվի դեկտեմբերի 4-ին.

«Բայց, ընկերներ, բամբակից էլ ավելի արժեքավոր մի բան կա — այդ մեր յերկրի ժողովուրդների բարեկամությունն է: Այս խորհրդակցությունը, ձեր ճառերը, ձեր գործերն ասում են, վոր մեր մեծ յերկրի ժողովուրդների փոխադարձ բարեկամությունն ամրանում է: Այս շատ կարևոր է ու նշանակալից, ընկերներ: Հին ժամանակ, յերբ յերկրում իշխանության գլուխ եյին կանգնած ցարը, կապիտալիստները, կալվածատերերը, — կառավարության քաղաքականությունն այն եր, վոր մեկ ժողովուրդ — ռուս ժողովուրդը դարձնի իշխող, իսկ մյուս բոլոր ժողովուրդները — ստորադրյալ, ճնշվող: Այդ մի գազանային գայլի քաղաքականություն եր: 1917 թ. հոկտեմբերին, յերբ մեզանում Պրոլետարական Մեծ հեղափոխությունը

ծավալվեց, յերբ մենք տապալեցինք ցարին, կալվածատերերին և կապիտալիստներին, մեծ ԼԵՆԻՆԸ, մեր ուսուցիչը, մեր հայրն ու դաստիարակողն ասաց, որ այսուհետև չպետք է լինեն ոչ իշխող, ոչ էլ ստորադրյալ ժողովուրդներ, որ ժողովուրդները պետք է լինեն հավասար և ազատ: Դրանով նա թաղեց, դագաղը դրեց հին ցարական, բուրժուական քաղաքականությունը և հռչակեց նոր, բոլշևիկյան քաղաքականությունը, մեր յերկրի ժողովուրդների փոխադարձ բարեկամության քաղաքականությունը, յեղբայրության քաղաքականությունը:

Դրանից 18 տարի յե անցել: Յեվ ահա, մենք արդեն ունենք այդ քաղաքականության բարեբեր արդյունքները: Այս խորհրդակցությունը մի ցայտուն ապացույց է այն բանի, որ ԽՍՀՄ-ի ժողովուրդների անցյալ փոխադարձ անվստահությանն արդեն վաղուց վերջ է տրված, որ անվստահությունը փոխարինվել է լիակատար փոխադարձ վստահությամբ, որ ԽՍՀՄ-ի ժողովուրդների միջև բարեկամությունն աճում է ու ամրանում:

Ընկերներ, այս ամենաարժեքավոր



բանն է այն ամենից, ինչ-որ տվեց մեզ բոլշևիկյան ազգային քաղաքականությունը:

Իսկ ԽՍՀՄ-ի ժողովուրդների փոխադարձ բարեկամությունը մեծ ու լուրջ նվաճում է. որովհետև քանի դեռ այդ բարեկամությունը գոյություն ունի, մեր յերկրի ժողովուրդներն ազատ կլինեն ու անպարտելի: Ոչ ոք մեզ համար սարսափելի չե, ոչ ներքին, ոչ արտաքին թշնամիները, քանի այդ բարեկամությունն ապրում է ու գոյություն ունի: Կարող եք այդ մասին չըտարակուսել, ընկերներ»[1]):

Այդ համաշխարհային պատմական հաղթանակներն ազգային հարցի ճիշտ լուծմամբ, Լենինի-Ստալինի մեծ և իմաստուն կուսակցությունը ձեռք է բերել լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության բոլոր թշնամիների դեմ մղած համառ ու անխնա պայքարում: Համկ(բ)Կ մերկացրեց

[1]) Ի. Վ. Ստալին — Ճառ — Տաճիկստանի ու Թուրքմենստանի առաջավոր կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների և կուսակցության ու կառավարության ղեկավարների խորհրդակցությանը — 4-ին դեկտեմբերի, 1935 թ.:

և ջնջեց բոլոր հակակուսակցական թեքումներ և ուղղություններ կրողներին, վորոնք շաղկապվեցին հակահեղափոխական նացիոնալիզմի և ֆաշիզմի հետ, մերկացրեց և ջնջեց ֆաշիստական ագենտներին, պրովոկատորներին, ստոր մատնիչներին և դավաճաններին — Պյատակովին, Բուխարինին ու նրանց նողկալի մնացորդներին:

Լենինի-Ստալինի կուսակցությունն իր ճիշտ ազգային քաղաքականությամբ ապահովեց ԽՍՀՄ-ի մեծ ու փոքր ժողովուրդների քաղաքական, տնտեսական ու կուլտուրական բուռն վերելքը: Բազմազգի Խորհրդային Միությունը հասցրեց չըտեսնված ծաղկման, բռնելով իր շուրջը ամբողջ աշխարհի մասսաների լարված ուշադրությունը, վորոնք նայում են ԽՍՀ Միության՝ մեծ հույսով և ապավինությամբ:

Ստալինյան Սահմանադրությամբ սահմանված ԽՍՀՄ-ի ընտրական սիստեմը, վորի հիման վրա կատարվելու յեն ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի, նրա յերկու իրավահավասար պալատների՝ Միութենական Խորհրդի և Ազգությունների Խորհրդի առաջիկա ընտրությունները, հանդիսանում



և Խորհրդային Սոցիալիստական պետության հետագա եվ ավելի հզոր ծաղկման և ամրացման յերաշխիքը, վորպես ԽՍՀՄ-ի իրավահավասար, ազատ, անկախ և յերջանիկ ժողովուրդների կամավոր միության, միացած Միութենական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության մեջ:

Լենինի-Ստալինի կուսակցության և ժողովուրդների մեծ առաջնորդ՝ ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ, Խորհրդային Միության բազմամիլիոն աշխատավոր մասսաները ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդում կընտրեն ամենից հեղինակավոր, յերկրի լավագույն և ստուգված մարդկանց, վորոնք արժանի յեն կրելու աշխարհում առաջին Խորհրդային Սոցիալիստական պարլամենտի պատգամավորի կոչումը, վորը կհանդիսանա իրական՝ մինչև վերջը ծավալված սոցիալիստական դեմոկրատիզմի մարմնացումը Միության Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների բոլոր ժողովուրդների իսկական ժողովրդապետությունը:

Խ. ԼԻԲՄԱՆ

*ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻՆ ՅԵՎ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ*

## I. ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 20-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՈՒ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ԹԵՄԱՆ

1. 1917 թվականի Հոկտեմբերյան զինված ապստամբությունը և Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության հաղթանակը ԽՍՀՄ-ում:

2. Լենինի-Ստալինի կուսակցությունը — Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության հաղթանակների կազմակերպիչ և ղեկավար:

3. ԽՍՀՄ Ստալինյան Սահմանադրությունը — ԽՍՀՄ-ում սոցիալիզմի համար մղվող պայքարի ու հաղթանակի հանրագումար:

4. ԽՍՀՄ-ը — սոցիալիստական, աշ-



խարհում ամենահետևողական դեմոկրատիզմի յերկիր:

5. ԽՍՀՄ-ն — ինդուստրիալ հզոր պետություն, աշխարհում ամենախոշոր սոցիալիստական գյուղատնտեսության յերկիր:

6. Սոցիալիզմի հաղթանակը և ժողովուրդների բարեկամության ծաղկումը ԽՍՀ Միությունում:

7. Բանվոր դասակարգի անխախտ դաշինքը գյուղացիության հետ, վորպես խորհրդային հասարակակարգի հիմքը:

8. ԽՍՀՄ-ը և կապիտալիզմի յերկրները 20 տարվա ընթացքում:

9. Ի՞նչպիսի թշնամիների դեմ մղվող պայքարում Լենինի-Ստալինի կուսակցությունը ԽՍՀՄ-ում հասավ սոցիալիզմի հաղթանակին:

10. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխության և ԽՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի միջազգային նշանակությունը:

## 2. ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 20-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԹԵՄԱՆԵՐ

1. Ի՞նչպես բանվորներն ու չքավոր գյուղացիությունը Լենինի — Ստալինի կուսակցության ղեկավարությամբ նվաճեցին իշխանությունը 1917 թվականի հոկտեմբերին:

2. ԽՍՀՄ Ստալինյան Սահմանադրությունը — ԽՍՀՄ-ում սոցիալիզմի համար մղվող պայքարի ու հաղթանակի հանրագումար:

3. Ի՞նչ էր ցարական Ռուսաստանը և ի՞նչ դարձավ ԽՍՀՄ-ը:

4. Ի՞նչ տվեց սոցիալիզմի հաղթանակը ԽՍՀՄ բանվորներին ու գյուղացիներին:

5. Բանվորների ու գյուղացիների անխախտ դաշինքը, վորպես խորհրդային համակարգի հիմքը:

6. Սոցիալիզմի հաղթանակը և ժողովուրդների բարեկամության ծաղկումը ԽՍՀՄ-ում:



7. ԽՍՀՄ-ն — ամենադեմոկրատական յերկիրն է աշխարհում:

8. ԽՍՀՄ-ը — խաղաղության հենարան, բոլոր յերկրների աշխատավորների և ճնշվածների հայրենիք:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Խմբագիր՝ ԲԱԼԱԲԵԿ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Սրբագրիչ՝ Տ. Տերունի
Հրատ. № 19. Պատվեր № 232
Գլավլիտի լիազոր Շ—1257
Տիրաժ 12.165

«ԽՈՐՀ. ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ. ՏՊԱՐԱՆ, ԵՐԵՎԱՆ

Շարունակվում է 1937 թ.

բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.

6 » . . . 3 »

3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝ „Սոյուզպեչատ“-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին.